# ԿԱՆՈՆ

# ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ

## ՎԻՃԱԿԱՑ ԵՒ ՎԱՆՈՐԷԻՑ







Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Մ. ՍԱՐՂԵԱՆ

1890

Kanon barekargutean

# ԿԱՆՈՆ

# ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ

## ՎԻՃԱԿԱՑ ԵՒ ՎԱՆՕՐԷԻՑ

# ԿԱՆՈՆԱԳՐԻՍ

## ՊԱՏՃԱՌՆ ՈՒ ՆՊԱՏԱԿԸ



Սահմանադրութիւնը չորրորդ գլխոյն մէջ քանի մը յօդուածներով ծրագրած է այն ընդհանրական սկզբունքներն՝ որոց համեմատ Թեմական առաջնորդք եւ վանականք իրենց սահմանադրական պարտքերը պիտի կատարեն, սակայն այսոքիկ բաւական չեն անօրինելու այն ամեն կանոնական հարկաւոր մանրամասնութիւններ՝ որովք կրնան կառավարուիլ առաջնորդարանք եւ մենաստանք։

Հարկ անհրաժեշտ էր ունենալ ԿԱՆՈՆԱԳԻՐ մը, որոյ յօդուածներն Սահմանադրութեան սկզբունքներն լիապէս բովանդակելէ զատ՝ պարունակէին նաեւ մեր ազգային եւ եկեղեցական բոլոր աւանդութիւններն եւ սովորութիւններն, որպէս զի Թեմերը հաստատապէս բարեկարգուէին, Պատրիարքարանս ալ օրը օրին անօրինութիւններ մտածելու եւ գործադրելու դժուարութիւններէն միանգամ ընդ միշտ ազատուէր։

Արդարեւ քանիցս վարչական հրահանգներ դուրս ելած են Պատրիարքարանէ, սակայն անոնք աւելի ընտարութեան եւ համապատասխանութեան կերպը բացատրող խրատներ են՝ քան Թեմական բարեկարգութեան համար կարեւոր եղած կարգի եւ կանոնի բոլոր պարագայից օրէնսդրութիւն։ Ասոնցմէ աւելի բան մ՚ընելու պէտք էր՝ որպէս զի Սահմանադրութենէ դուրս մնացած ազգային եկեղեցական սկզբունքներ ամբողջապէս հաւաք-

ուած լինէին ։ Այն սկզբունքներ՝ որ ամբողջ չկան Սահմանադրութեան մէջ՝ այլ սակայն ազգին արմատացեալ սովորութեանց եւ աւանդութեանց մէջ միշտ կենդանի են եւ իւրեանց գործադրութիւնը կը պահանջեն՝ ասոնք են.

Ա. — Ապակեդրոնացման դրութիւն, սկզբունք մը որ Սահմանադրութենէն յառաջ եւ յետոյ միշտ ունիմք, սկզբունք մը՝ որ կրօնական է, եւ Հայկական Եկեղեցւոյ յատուկ հանգամանքը ։

Բ. — Որպէս քահանայն մասնաւոր մի թաղի կամ գիւղի եկեղեցւոյն ժողովուրդը կընտրէ, նոյնպէս եպիսկոպոսը մասնաւոր մի թեմի ժողովուրդը կընտրէ ։

Գ. — Ժողովուրդն երկու այս պաշտօնեաներէն իւր մէջէն եւ իւր ծանօթ անձանց ամենէն արժանին կընտրէ ։

Դ. — Որպէս քահանայն ցկեանս քահանայ է եկեղեցւոյն՝ յորոյ վերայ ձեռնադրեալ է, եպիսկոպոսը ցկեանս եպիսկոպոս է թեմին՝ յորոյ վերայ ձեռնադրեալ է ։

Ե. — Եպիսկոպոս ընդհանրական գլուխ է բոլոր եկեղեցականաց՝ որ իւր թեմին մէջ կան՝ թէ ի քաղաքս լինին պաշտօնով թէ ի մենաստանս բնակին կրթութեան եւ ծերութեան համար ։

Զ. — Եպիսկոպոսութիւնը վարձատրութեան համար չի տրուիր՝ այլ ժողովրդեան մը վրայ եւ պէտք ըլլալուն համար կը տրուի ։

Է. — Եպիսկոպոսաց արժանիքն հաւասար է ։ Արժանեաց պատիւ տալու տեսակէտով տեղափոխութիւն ի միոյ վիճակէ յայլ՝ զեղծումն է ։ Ազգին գերագոյն պէտքն է՝ որ այս կամ այն մասնաւոր թեմին եպիսկոպոսը կը հրաւիրէ յառաւել մեծ ծառայութիւն ։

Ը. — Թեմական եպիսկոպոսներն կրօնաւոր վարդապետներէ կառնուին եւ կը ձեռնադրուին ։ Սոցա բա-

րոյականն է խուսել միշտ դէպ ի սուրբ առաձնակեցութիւն, ժողովրդեան աննահանջելի փափաքն է նոցա արբանեկաց եւ գիտնական շնորհքէն եւ Աստուածգիտութենէն լուսաւորուելու համար 'ի քաղաք հրաւիրել։

Թ. — Վանքերը Թեմական ժողովրդեան բարեպաշտութեան եւ ազգային սուրբ յիշատակաց վրայ ունեցած աւանդական սիրոյն մեծ յիշատակարաններն են եւ հոգեւոր վառարանը։ Բարեպաշտութիւնն է հիմնած վանքերը, եւ նոյն բարեպաշտութեամբ կը պահպանուին։ Վիճակ եւ վանք մէկ ամբողջի մասեր են։

Ժ. — Ոչ առանց եկեղեցւոյ քահանայ, ոչ առանց վանքի աբեղայ կամ վարդապետ, ոչ առանց վիճակի եպիսկոպոս՝ եւ առանց Թեմի վանք։

ԺԱ. — Թեմական եպիսկոպոսաց ծագումը վանքէ կսկսի, կատարածնին ալ վանքի մէջ է։

Ահաւասիկ ասոնք են մեր ազգային եւ եկեղեցական անխախտելի սկզբունքներն։ Օրէնքներն այս սկզբունքներն պահպանուելու համար պէտք է շինուին։

Սահմանադրութեան մէջ առաջնորդը ըստ ամենայնի նմանցուած է Պատրիարքի, (տես Յօդ. 97), սակայն այս նմանութիւնը աւելի ընտրուելու եղանակին կողմանէ է, քան բոլոր հանգամանքներով 'ի միասին։ Առաջնորդին բոլոր հանգամանքը լրանալու համար եպիսկոպոսացման պայմաններն ալ պէտք է նկատողութեան առնուին։ Պատրիարքին համար Սահմանադրութիւնը կը ցուցնէ՝ թէ յորո՞ց կամ ուստի՞ պիտի ընտրուի (տես Սահմ. Յօդ. 1)։ Բայց առաջնորդը յորո՞ց պիտի ընտրուի ցոյց տրուած չէ, պէտք է այս պակասը լրանայ։

Թէպէտ եւ Սահմանադրութեան մէջ յօդուած չունինք՝ թէ վանքերը վիճակներէն բաժանեալ են, սակայն գաւառի երեսփոխանական ժողովոյն ընտրական իրաւունքը եւ վանականաց իրենց վանահայրն ընտրելու իրաւունքը մէկ անձի վրայ չմիաբանելուն պէս՝ բաժա-

նումը ինքնին կը հետեւի. միւս կողմանէ Սահմանադրութիւնը կ՚ենթադրէ՝ թէ առաջնորդք միանգամայն վանահայր կրնան ըլլալ, վանահարք ալ առաջնորդ կրնան ըլլալ։ Այս յօդուածներուն երկսայրի իմաստը թէ վանքերուն բաժանման վնասակար հետեւանքը յառաջ բերաւ եւ թէ՛ առաջնորդաց եւ վանահարց մէկ կէտի վրայ դէմ առ դէմ գտնուելու եւ հոգեւորական դատախումբը բաժանելու առիթ տուաւ։ Աստր հետեւանքն եղաւ՝ որ վանքերէ դուրս ինկան վանականք, ժողովուրդը վաղեմի բարեպաշտութեամբ չնայեցաւ այլ եւս վանքերուն վրայ, խանգարեցաւ վանքերու տնտեսական, կրօնական եւ կրթական վիճակը, եւ նուազեցաւ ժողովրդեան աստուածպաշտութեան հոգին։ Պէտք էր այս անկարգութիւնը բառնալու համար կէտ մը գտնել համաձայնութեան՝ յորում գտնուի երեսփոխանական ժողովոյն եւ վանականներուն ընտրական իրաւունքներն գոհացուին։ Ապակեդրոնացման սկզբունքին, որ սահմանադրական է եւ ասկէց յառաջ ազգային ալ է, կատարելապէս հաւատարիմ մնալու համար վանքերը թեմական եպիսկոպոսի իրաւասութեան եւ վերատեսչութեան ներքեւ պէտք է լինին. զի ապակեդրոնացումն չէ՝ ամբողջի մը հարկաւոր անանջատելի մասերն իրարմէ բաժանել, այլ քակել է, որ ինչ ամբողջ մը կացուցանող մասեր են՝ պէտք է համօրէն բովանդակին ՚ի միութեան։ Ըստ սկզբանց եկեղեցական վարչութեան մէկ թեմի մէջ մէկէ աւելի եպիսկոպոս չկրնար լինել, նոյն եւ մի թեմական եպիսկոպոսի իշխանութեան ներքեւ են ամեն դաս կրօնական հաստատութիւնք։ Վանքերը կամ վանականները ապակեդրոնացնել հաւասար է թեմի մը եկեղեցին եւ անոնց քահանայները եպիսկոպոսի իշխանութենէն ըմբոստ հանելու։ Վանքերը եւ վանականները ժողովրդեան մէջ եւ ժողովրդեան համար են։ Առաջնորդութիւն եւ վանահայրութիւն, կամ որ նոյն է վար-

դապետութիւն եւ վանականութիւն իրարմէ բաժանելով է՝ որ առաջնորդ եպիսկոպոսներ անգամ մը աշխարհական պաշտօնեայներ կը համարեն զիրենք, ժողովուրդն ալ սկսեր է իր առաջնորդէն աւելի աշխարհական օգուտ սպասել քան հոգեւոր։ Մինչդեռ մեր ժողովուրդը ի սկզբանէ անտի սովորած էր իր եպիսկոպոսը գըլուխ տեսնել ինչպէս քահանայից նոյնպէս եւ իր վանքի կրօնաւորաց, եւ աւելի վանքերը նկատել բուն աթոռ թեմական եպիսկոպոսի քան գաւառագլուխ քաղաքը։

Արդի այս կացութեան մէջ եպիսկոպոսներն յաստուածային իրաւանց իրենց վրայ կեդրոնացեալ հոգեւոր մեծ հեղինակութենէ զրկուելով՝ վանքերէ իսկ արտաքսեալ վիճակ մ'ունեցած են, որոց սակայն ծագումն եւ կատարած վանքի մէջ է։ Այժմու այս ձեւը եպիսկոպոսութիւնը աշխարհականացնելու կը տանի զմեզ՝ որ սակայն անկարելի է, վտանգաւոր է, եւ այժմէն անապա գայթակղութեանց դռներ բացուած ըլլալնուն նշաններն են՝ որ թեմերուն մէջ եպիսկոպոսներ չկան, եպիսկոպոսներն իրենց ապրուստին եւ ապագային հոգերով պաշարեալ են, թեմերը ընդարձակելու խորհուրդներ կըլլան, եպիսկոպոսք վիճակէ վիճակ փոխուելու ջանքեր կընեն, վանքերը անիշխանութեան մէջ հետզհետէ կը փըճանան, եպիսկոպոսի իշխանութիւնը կրօնաւոր վարդապետի վրայ տկարացեր է, քահանայից եւ ժողովրդեան վրայ իսկ տկարանալ սկսեր է, եպիսկոպոսք եւ վարդապետք փոխանակ կրօնաւորական եւ վանական կենաց պայմաններու մէջ իրենց մխիթարութիւն փնտըռելու՝ ուրիշ արտասովոր կեանքի պայմաններով ապրելու վիճակ մ'առած են, եւն, եւն։

Դառնալ պէտք է նախկին բարեկարգութեան պայմաններուն, ներկայ կանոնագիրն այս նպատակաւ պատրաստուած է։

Թէպէտեւ ասկէց յառաջ Թեմական վերատեսչութեան ծրագիր մը յօրինուած է, եւ քանի մը յանձնաժողովներէ եւ խառն ժողովներէ անցած, սակայն կատարեալ գործ մը չէ. չկան մէջը այն ամեն մանրամասնութիւնք որ այս կանոնագրիս մէջ նշանակուած են։ Անկէց զատ, այն ծրագրին մէջ գլխաւոր երկու տրամադրութիւնք կան՝ որ Սահմանադրութեան կը հակառակին եւ ազգային սովորութեան ալ չեն յարմարիր։ Յորոց մէկն է ընտրական իրաւունքը ժողովրդէն առնել կեդրոնին սեպհական ընել, միւսն ալ Թեմական եպիսկոպոսութիւնը դաստուորութեան մը վերածելով ոմանք եպիսկոպոսարան եւ ոմանք արքեպիսկոպոսարան ընել։ Ասոնց երկուքն ալ դժուար է ընդունիլ. Թէ ի՞նչպէս բացատրեմ։

Ժողովուրդը ընտրական իրաւունքէ զրկել Սահմանադրութեան բացէ 'ի բաց հակառակ է. ընդունել տալ անկարելի բան է. վաւերացեալ ազգային օրինագրքի մը տրամադրութիւն եւ ազգային վաղնջուց սովորութիւն միշտ պիտի ներհակի այս նորութեան։ Թէպէտեւ Թեմերը դաստուորութեան մը բաժնել Եկեղեցւոյ սովորութենէն է, ասոր ոչ ոք կը հակառակի, սակայն անկարելի է այժմու վիճակի մէջ։ Որովհետեւ Թեմ մը արքեպիսկոպոսարան ըլլալու համար քաղաքական տեղագիրն եւ հաւատացելոց բազմութիւն պէտք է իրարու համաձայնին, տեղ մը անկախ կուսակալութիւն է՝ սակայն հոն ժողովուրդը քիչ է, ուրիշ տեղ մը կախեալ կառավարչութիւն կամ սոսկ տեղապահութիւն է, սակայն ժողովրդեան թիւն ստուար է, ուրեմն խնդիր է՝ Թէ ո՞ր հանգամանքին կարեւորութիւն տալով Թեմ մը արքեպիսկոպոսարան եւ ուրիշ Թեմ մը եպիսկոպոսարան անուանելու եմք։ Ուստի Պատրիարքարանն տեղագրական բաժանումն եւ ժողովրդեան ստուար թիւն նկատողութեան առնելով՝ որ տեղ որ երկու պայմաններն միա-

ցած տեսանք՝ այն թեմերն հետզհետէ արքեպիսկոպոսութեան կանուանէ, եւ եպիսկոպոսներն ալ արքեպիսկոպոս տիտղոսով կը ճանչնայ։ Անկէ Պատրիարքարանի վերապահեալ անօրինութիւն պէտք է մնայ՝ եւ ոչ թէ այժմէն թեմերուն այսպիսի աստիճան բաշխուելու է։

Նախորդ ծրագրի մէջ վիճակաց շատ մանր բաշխումը ջնջուելով քանի մը թեմեր միացուցուած էին. շատ կարեւոր էր այս միացումը, որովհետեւ թեմեր կան՝ որոց բազմութիւնը 800 տուն բնակիչ ունի, ինչպէս Բաբերդ, սա ինչո՞ւ չմիանայ Երզնկայի հետ՝ որոյ բնակչաց թիւը 2000 տուն չանցնիր։ Տեղեաց հեռաւորութիւնները երեւան բերած են այս ստորաբաժին թեմերն։ Անկէց շատ հին տարիներ յառաջ Պատրիարքարանը մեծ վիճակներուն առաջնորդ եպիսկոպոս կը դնէր. իսկ ցան եւ ցիր մանր թեմերն ալ՝ զորս իւր Կոնդակին մէջ փէ-բէքէճբէ կանուանէր, կը յանձնէր կամ մերձաւոր թեմակալ եպիսկոպոսին առանձին խնամոց եւ կամ իւր կողմանէ կարգեալ մասնաւոր փոխանորդի մը, սա կա՛մ պարզ վարդապետ կը լինէր, կա՛մ հիւրութեամբ իւր մօտն եկած անպաշտօն մի եպիսկոպոս՝ Էջմիածնի, Սսոյ եւ Աղթամարայ մխաբաններէն։ Երբեմն փոխանորդով կառավարուող թեմեր կամ հետզհետէ բազմանալով նշանաւոր թեմի ձեւն առին եւ ինքեանք իրենց առաջնորդ ընտրեցին, եւ կամ եթէ ոմանք չբազմացան, այլ վիճակաց օրինակին հետեւելով սկսան սոքա եւս իրենց հովիւն ընտրել, այս կերպով բազմացան թեմերն։

Այսօր բան մը չեմք կրնար ընել, պէտք է այս թեմերն թողուլ իրենց ինքնուրոյնութեան մէջ եւ սպասել ժամանակի՝ յորում ճանապարհաց հարթութեամբ եւ երկաթուղեաց ծաւալմամբ վիճակներն իրարու մերձենալով փոքրերու միացումը դիւրանայ։ Սակայն պատշաճ է՝ որ այս փոքր թեմեր եթէ կարելի է, առանց եպիսկոպոսի պարզապէս Պատրիարքական փոխանորդներով կառավարուին առ այժմ։

Ներկայ կանոնագրիս վրայ աւելի ընդարձակ տեղեկութիւններ կանոնաց բացատրութեան մէջ պիտի տեսնուի, զորս յատուկ ծանօթութիւններով պարզած եմք։ Նկատելի է նաեւ այս Կանոնագրի մէջ՝ Թեմական քահանայից հասութին համար նշանակած կարգադրութիւնները։ Եկեղեցականաց ապրուստի խնդիրը կանոնով մը կարգադրելն հարկաւոր է, զի այժմու այս անկանոն վիճակը պատճառ տուած է քահանայութեան հետզհետէ անկման։ Մեր ցուցած եղանակը կրնայ բարեփոխուիլ, սակայն կանոն մ՚ունենալնիս պէտք է, որպէս զի քահանայք ազատին այժմու աննախանձելի վիճակէն եւ ժողովուրդն ալ գիտնայ՝ թէ քահանային պատուաւոր կերպիւ ապրեցնելն իւր պարտքն է։

Վերջապէս Թեմական բարեկարգութիւնը կանոն մը կը խնդրէ, եթէ մեր տեսութենէն վրիպած դեռ եւս յօդուածներ կան՝ որ այս կանոնագրի մէջ մտածուած չեն, Երեսփոխանական Ժողովոյ խորին ուշադրութեան կը յանձնեմք եւ կը փափաքիմք որ օր յառաջ քննութիւնն ընէ եւ գործադրութիւնն որոշէ։



# ԿԱՆՈՆ

# ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ

## ՎԻՃԱԿԱՑ ԵՒ ՎԱՆՕՐԷԻՑ

---

## ԳԼՈՒԽ Ա.

### ՆԱԽԱԿԱՐԳ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆ ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ԹԵՄԱԿԱԼԻ

......

ՅՕԴՈՒԱԾ 1. — *Երբոր Թեմ մը բաց է վախճանմամբ եպիսկոպոսի՝ որ նոյն Թեմը կը հովուէր, վիճակին Խառն Ժողովն անմիջապէս նոյն Թեմի վանուց վարդապետներէն մէկը, իսկ եթէ վանք եւ վարդապետ չկայ, քաղաքին աւագերէց քահանայն առաջնորդական Տեղապահ կը կարգէ եւ Պատրիարքարանի իմաց կուտայ։* (1)

ՅՕԴ. 2. — *Առ առաւելն երեք ամիս անցնելէ յետոյ առաջնորդական Տեղապահն՝ վիճակային Ընդհանուր Ժողովոյ Դիւանն եւ Խառն Ժողովն 'ի միասին առնելով՝ կը խնդրէ Պատրիարքարանէն որ Պատրիարքական փոխանորդը որոշուի։*

ՅՕԴ. 3. — *Պատրիարքարանը երբոր կը նկատէ՝ թէ բաց մնացած Թեմին մէջ միայն վարդապետներ պարունակող վանք կայ, հրաման կուտայ՝ որ դուռաք*

Երեսփոխանական Ժողովն իրենց Թեմի միաբան վարդապետներէն արժանին ով որ է՝ նոյնը Պատրիարքական Փոխանորդ որոշեն մեծամասնութեան քուէով եւ հաստատութիւնը խնդրեն, Պատրիարքարանն ալ կը հաստատէ եւ տեղական Կառավարութեան կիմացունէ իւր փոխանորդը։ (2)

ՅՕԴ. 4. — Եթէ վիճակին մէջ վանք եւ վանական միաբանութիւն չկայ, կամ, կեցածներն չափազանց ծեր եւ անկարող, կամ յոյժ տգէտ եւ ժողովրդեան գլուխ անցնելու անյարմար են, Պատրիարքարանն ալ կը համոզուի այնպէս ըլլալուն, յայնժամ Կեդրոնական Վարչութեան Խառն Ժողովն ուրիշ վանքերու մէջ գտնուած արժանի վարդապետներէն մէկը կընտրէ եւ իւր կողմանէ կը ղրկէ Պատրիարքական Փոխանորդ։ (3)



## ԳԼՈՒԽ Բ.

## ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑՈՒՄՆ ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՓՈԽԱՆՈՐԴԻ

......

ՅՕԴ. 5. — Ժողովրդեան բուն ընտրական իրաւունքը, առաջնորդի մասին, Պատրիարքական Փոխանորդին եպիսկոպոսացումն խնդրելուն մէջն է։ (4)

ՅՕԴ. 6. — Երբ Թեմականք իրենց վանքի միաբաններէն մէկն ընտրեր են Պատրիարքական Փոխանորդ, սա մէկ տարի պաշտօնավարելէն յետոյ, իրեն համար գաւառական Ընդհանուր Ժողովն եպիսկոպոսացումն կրնայ խնդրել Պատրիարքարանէն։ (5)

ՅՕԴ. 7. — *Իսկ Պատրիարքարանի կողմանէ յուղարկեալ Պատրիարքական Փոխանորդն պէտք է երեք տարի ամբողջ պաշտօն վարէ, եւ այս գաւառական Ընդհանուր Ժողովէն եպիսկոպոսացումն խնդրուի ։*

ՅՕԴ. 8. — *Թէպէտ եւ գաւառի Երեսփոխանական Ժողովը խնդիր կընէ Պատրիարքական Փոխանորդի եպիսկոպոսացումն եւ բացարձակ քուէիւ կորոշէ ; սակայն առաջարկութեան հանրագիրն պէտք է ստորագրեալ լինի ոչ միայն գաւառական Ընդհանուր Ժողովէն, այլ եւ Թեմին մէջ եղած վանքին վանականներէն եւ նոյն Թեմի եկեղեցեաց աւագ քահանայներէն ։* (6)

ՅՕԴ. 9. — *Այն Թեմերն՝ որ Կուսակալութեան կեդրոն են կամ անկախ Միւթէսարրըֆութիւն, ինքեանք իրենց Երեսփոխանական Ժողովը գումարելով Պատրիարքական Փոխանորդին եպիսկոպոսացումը կորոշեն եւ կը խնդրեն ։ Իսկ երբոր փոքր Միւթէսարրըֆութիւն կամ Գայմագամութիւն են, յայնժամ Նահանգային Թեմի եպիսկոպոսը պէտք է Պատրիարքարանի կողմանէ երթայ Նախագահէ այն Ժողովոյն՝ որ եպիսկոպոսացումը պիտի քուէարկէ ։ Երեսփոխանական Ժողովոյն կատարած ընտրութեան տեղեկագիրն եւ անոր յարակից հանրագրերն պէտք է Նահանգային Նախագահող եպիսկոպոսին առաջարկութեան Թղթովն մատուցուին Պատրիարքարանին ։* (7)



# ԳԼՈՒԽ Գ.

## ԴԱԴԱՐՈՒՄՆ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ Ի ՊԱՇՏԱՄԱՆԷՆ

......

ՅՕԴ. 10. — *Հովիւ մը՝ ցորչափ Պատրիարքական Փոխանորդ է վիճակին մէջ, վիճակային Ընդհանուր Ժողովն անոր կարողութեան վրայ կրնայ դիտողութիւն ընել եւ Պատրիարքարանէ փոփոխումն խնդրել երեք տարւոյ մէջ։ Երբ այս պայմանաժամն աւարտի եւ երեք տարին երեք ամիս անցնի, եւ Թեմին կողմանէ 'ի Պատրիարքարան չգան եպիսկոպոսացման խնդրագրերն, Պատրիարքարանն՝ Պատրիարքական Փոխանորդին խընդրանաց վրայ եպիսկոպոսացման որոշումն կը կատարէ Կեդրոնական Վարչութեան Խառն Ժողովոյ մէջ, եւ վկայական գիրը կը յուղարկէ՝ որ երթայ եպիսկոպոսական օծութիւն ընդունի Հայրապետութեան Աթոռէն եւ այնպէս պաշտօնավարէ Թեմին մէջ։* (8)

ՅՕԴ. 11. — *Յիշատակեալ պայմաններով Թեմին վրայ ձեռնադրեալ եպիսկոպոսը ցկեանս հովիւն է իւր վիճակին։ Սա իւր կողմանէ, յանուն ո՛ր եւ է պատճառի, չէ կարող առաջարկել ո՛չ հրաժեշտ եւ ո՛չ փոփոխումն 'ի միոյ վիճակէ յայլ։*

ՅՕԴ. 12. — *Կան սակայն արտաքին պատճառներ՝ որոց համար եպիսկոպոսն իւր Թեմէն դուրս կրնայ հանուիլ, եւ ասոնք են,*

*Ա. — Երբ ազգային գերագոյն Իշխանութիւնը առաւել կարեւորագոյն վիճակի մը կամ պաշտօնի մը կը կոչէ զեպիսկոպոսն։*

Բ. — Երբ գայթակղեցուցիչ հաւատքով եւ բարքով եւ հերձուածողութեամբ ժողովրդեան համար հոգեւոր վտանգ մը կը դառնայ։

Գ. — Երբ Կառավարութիւնն՝ առաջնորդէն դըժգոհ լինելու պատճառ ունենայ, եւ Պատրիարքարան կատարեալ քննութեամբն համոզուի՝ թէ արդարեւ առաջնորդը դժգոհութեան պատճառ տուեր է։

Դ. — Երբ թեմականք առանց հարկաւոր պատճառի, պարզ դժգոհութեամբ, կը խռովին, չեն ուզեր իրենց եպիսկոպոսը եւ Պատրիարքարանի խաղաղասիրական ջանքերն ապարդիւն կը լինին։

Ե. — Երբ թեմական եպիսկոպոսն այնչափ կը ծերանայ՝ որ այլեւս չկրնար առաջնորդական հոգւոց ծանրութիւնը բառնալ։ Այս առեն եպիսկոպոսը վանք կը քաշուի եւ իւր տեղը փոխանորդ վարդապետ մը կը դնէ որոշմամբ գաւառի Երեսփոխանական Ժողովոյն, եւ առաջնորդական հասոյթին կէս բաժինը կընդունի վիճակէն։

ՅՕԴ. 13. — Եպիսկոպոսին բացակայութիւնը հարկադրող պատճառաց երկրորդին եւ երրորդին համար՝ եպիսկոպոսն իւր վիճակէն դուրս կը հանուի՝ սակայն վանքի մը մէջ կարգիլուի եւ բնաւ թեմական պաշտօն չկրնար վարել։

Այս առեն թեմը կը ղրկուի կեդրոնէն Պատրիարքական Փոխանորդի պաշտօնով վարդապետ մը կամ անպաշտօն մի եպիսկոպոս եւ անով կը կառավարուի՝ ցորչափ կենդանի է բուն եպիսկոպոսը։ (9)

Երբ, երրորդ պատճառին համար, կառավարութիւնը զիջանի, երկրորդին համար ալ՝ հերետիկոսութեան կամ հերձուածի վտանգը անհետանայ, նախկին թեմակալը Պատրիարքարանի թոյլտուութեան կրնայ արժանանալ եւ վերադառնալ յիւր վիճակ։

Իսկ չորրորդ պատճառին համար վիճակէն դուրս

հանուած եպիսկոպոսը Պատրիարքարանի որոշմամբ մօտակայ վանք մը կը քաշուի. սակայն Թեմական հասութին կէսը եպիսկոպոսին պիտի հատուցուի միշտ, մնացած կիսովն ալ Պատրիարքական Փոխանորդը գոհ պիտի լինի, ցորչափ կենդանի է Թեմին եպիսկոպոսն։ (10)

ՅՕԴ. 14. — Երբ առաջնորդի մը վրայ կառավարութիւնն դիտողութիւն ընելով Պատրիարքարանը զիջանի պաշտօնէն դադրեցնել մինչեւ բացատրութիւններն հաղորդուին Բ. Դրան, այս միջոցին Պատրիարքարանը առժամանակեայ հոգեւոր հովիւ մը կը ղրկէ առաջնորդական տեղապահի տիտղոսով. սակայն, դադարեցուցեալ եպիսկոպոսը իւր առաջնորդական հասութին մէկ չորրորդը միայն կընդունի։ (11)



## ԳԼՈՒԽ Դ.

## ՀԱՍՈՅԹՔ ԹԵՄԱԿԱԼ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

......

ՅՕԴ. 15. — Թեմակալ եպիսկոպոսի հասոյթք են.

Ա. — Այն անորոշ եւ անպայման նուէրներ՝ զոր ժողովուրդը բարեպաշտութեամբ եւ յօժարակամ սիրով կուտայ, ինչպէս պատարագաց եւ նմանք։

Բ. — Աթոռային խրատունք գանձելի ի նշանադրութեան եւ ի պսակադրութեան ժամանակի։

Գ. — Մէն մի Թեմական ընտանիքէ գանձելի (6) վեց դահեկանի տուրքը, զոր պէտք է ի Ծննդեան, ի Զատկի եւ ի Վերափոխման տօնի գանձուին ի ձեռն քահանայից եւ աթոռակալ որոշեալ անձանց։

ՅՕԴ. 16. — Վիճակագլուխ քաղաքի առաջնորդարանի շինութիւն, կահաւորումն, դիւանական արձանագրութեանց եւ թղթակցութեանց ծախքեր եպիսկոպոսին յատկացեալ հասութէն չպիտի հոգացուին, այլ քաղաքացիք իրենք պէտք է հոգան ի փոխարէն այն սահմանադրական իրաւանց՝ որով վիճակային երեսփոխանութեան համար անդամոց թուոյն երեք բաժնին երկուքը իրենք կընտրեն։ (12)

ՅՕԴ. 17. — Թեմակալ եպիսկոպոսն ինք անձամբ տարին անգամ մը այցելութիւն պէտք է տայ իւր վիճակի ժողովրդեան, եւ կամ գոնէ երկու տարին անգամ մը անպատճառ՝ եթէ այնչափ ընդարձակ է՝ որ չկրնար հասնիլ։ Իրմէն զատ, Աստուծոյ բանը քարոզելու, ժողովրդեան պիտոյից տեղեկանալու, եկեղեցւոյ եւ դպրոցի կալուածոց վիճակը եւ հաշիւները տեսնելու, եկեղեցեաց մաքրութեանց եւ ծիսական բարեկարգութեանց հսկելու համար իւր կողմանէ չի հասած տեղերը վարդապետ, եւ եթէ վարդապետ չկայ՝ առաջնորդանիստ քաղաքի ձեռնհաս քահանայներէն մէկը շրջեցունել։

ՅՕԴ. 18. — Պատրիարքարանի յատկացեալ մուդաթայի տուրքը Թեմակալ եպիսկոպոսներն իրենց հասութէն պիտի վճարեն առ մէն մի ընտանիք (1) մէկ դահեկան, որով իրենց բուն իրաւունքը կմնայ առ մէն մի ընտանիք հինգ դահեկան։



# ԳԼՈՒԽ Ե.

## ՎԻՃԱԿԱՅԻՆ ՎԱՆՔԵՐ

......

ՅՕԴ. 19. — *Վանքերուն իսկապէս վանահարք Թեմակալ եպիսկոպոսներն են, բացարձակ հոգեւորական գլուխ վանական միաբանից։ Վանքին եւ վիճակին մէջ ձեռնադրելի բոլոր եկեղեցականք եւ աստիճանաւորք Թեմակալ եպիսկոպոսէն ձեռնադրութիւն եւ աստիճան պիտի ընդունին։*

ՅՕԴ. 20. — *Թեմակալ եպիսկոպոսն վանքը լաւ հսկողութեան ներքեւ պահելու համար միշտ իւր կողմանէ փոխանորդ մը պիտի ունենայ, որ փոխ-վանահայր կըսուի եւ կընտրէ նոյն վանից միաբաններէն՝ զորն որ կամի։ Իսկ վանքին մատակարարութիւնը կը պատկանի միաբանութեան որ կը կատարէ Տնօրէն Ժողովով։ Տնօրէն Ժողով կընտրուի միաբանութենէն, կը հաստատուի Թեմակալ եպիսկոպոսէն, կը նախագահուի, ի բացակայութեան Թեմակալ եպիսկոպոսի, միշտ փոխ-վանահայրէն։* (13)

ՅՕԴ. 21. — *Վանքին տարեկան մատակարարութեան հաշիւը միաբանութեան ընդհանուր ժողովով քննուելէ եւ վաւերացուելէ յետոյ, երբ Թեմակալ եպիսկոպոսն պատասխանատուութիւնն իւր վրայ կառնու՝ կ'ստորագրէ, եւ երկու օրինակ պատրաստելով՝ զմին ի Պատրիարքարան կը յուղարկէ եւ միւսն Թեմական ընդհանուր ժողովոյ։* (14)

ՅՕԴ. 22. — *Պատրիարքարանն երբ ներկայացեալ հաշուէն գոհ կը լինի մատակարարութեան մէջ ուղղութիւն եւ կանոնաւորութիւն տեսնելով՝ վաւերացունելու եւ դարձնելու համար կ՚սպասէ որ գաւառի Երեսփոխանական Ժողովէն դիտողութիւն գայ. երբ վեց ամիսն անցնի եւ դիտողութիւն չգայ, կը վաւերացունէ եւ կը դարձունէ առ Թեմակալ եպիսկոպոսն ։*

ՅՕԴ. 23. — *Թեմակալ եպիսկոպոսն վանական հասութէն բնաւ իւր անձին կամ Թեմական պաշտօնին համար ծախք մ՚առնելու իրաւունք չունի ։ Այլ մանաւանդ՝ վիճակէն գանձելի տարեկան պտղի անուամբ բարեպաշտական նուէրին հաւաքման եւ ուխտաւորաց յաճախելով վանքը պայծառացնելու ջանքին մեծ ուշադրութիւն պարտի ընել ի շինութիւն եւ ի բարեզարդութիւն եւ ի հարստութիւն վանքին ։*

ՅՕԴ. 24. — *Փոխարէն աշխատութեան Թեմակալ եպիսկոպոսին՝ վանքերն պէտք է ծառայեն նոյն Թեմին կրթեալ եւ ուսեալ ժիր վարդապետներ, քահանայներ եւ վարժապետներ յարուցանելու եւ միանգամայն ապաշխարութեան ենթարկելի քահանայ կամ սարկաւագ պատսպարելու ։*

ՅՕԴ. 25. — *Իսկ այն վանքեր որ նշանակեալ բաւականութիւնը չունին, վանքին հասոյթք պէտք է գանձուին՝ եպիսկոպոսին կողմանէ կարգեալ վանական վարդապետի մը եւ գաւառին Խառն Ժողովոյ կողմանէ կարգեալ հոգաբարձութեան մը ձեռամբ* (15)։ *Սոյն կարգի վանուց հասոյթք ոչ թէ քաղաքին վարժարանաց ծախքը գոցելու համար ծախսուելու են, այլ վիճակի Կրօնական Ժողովոյն եւ Ուսումնական Խորհրդոյն տրամադրութեան տակ պէտք է պահուին, որպէս զի*

երբ պատահի՝ որ նոյն վիճակին մէջ փոքրաթիւ բնակչաց անկարողութեան պատճառաւ դրսէն քահանայ եւ վարժապետ վարձել հարկ լինի անով վարձուի, որպէս զի ոչ մի փոքր գիւղ առանց քահանայի եւ վարժապետի մնայ։ (16)

ՅՕԴ. 26. — Որ՝ թեմին մէջ որ մէկէ աւելի վանք կայ, բոլորն ալ միացեալ կը նկատուին եւ կը կառավարուին մէկ ընդհանուր միաբանական ժողովով, նոյն տնօրէն խորհրդով ընդ գերիշխանութեամբ մի թեմակալ եպիսկոպոսի։ Թեմին մէջ կեցած շատ մը վանօրէից բոլոր կրօնաւոր վարդապետք մէկ վանքի կրօնաւորներ կը ճանչցուին։



## ԳԼՈՒԽ Ը.

## ՎԱՆԱԿԱՆ ՆԵՐՔԻՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

......

ՅՕԴ. 27. — Վանքի մը միաբանութեան անդամ կը համարուին միայն վարդապետք, աբեղայք եւ սարկաւագք։ Սոքա միայն իրաւունք ունին Թեմակալ Պատրիարքական Փոխանորդի եպիսկոպոսացման աղերսագիրըն ստորագրելու, վիճակին Երեսփոխանական Ժողովոյ եւ Թեմական աւագ քահանայից հետ։ Սոքա միայն կը մասնակցին վանական ընդհանուր ժողովոյ 'ի դէպս ընտրութեան Տնօրէն Ժողովոյ, քննութեան եւ ստորագրութեան մատակարարութեան հաշուոց մատուցանելի ի ձեռն Թեմակալ եպիսկոպոսի առ Կեդրոնական Վարչութիւն։

ՅՕԴ. 28. — *Վանքին մէջ սարկաւագ եւ աբեղայ լինելի անձինք միաբանութեան ալ անդամ լինելու համար պէտք է առ նուազն երեք տարի դպրութեան աստիճանաւ բնակին վանքին մէջ կամ իբրեւ վանքին պատկանեալ դպիր ընդ ձեռամբ Թեմակալ եպիսկոպոսին աշակերտին եւ ծառայեն։*

ՅՕԴ. 29. — *Երեք տարին լրացնող դպիրն՝ երբ Հայերէն եւ Տաճկերէն լեզուաց, եւ, եթէ կարելի էր, եւրոպական բարգաւաճ ազգաց միոյն լեզուին կատարեալ հմտացեր, եկեղեցական պաշտամանց եւ երգոց գեղեցիկ վարժուեր, Հայաստանեայց Եկեղեցւոյ հաւատքին, բարոյականին, ծիսին եւ բոլոր պատմութեանց լիով գիտութիւն առեր, վարուց մէջ կրօնասիրութեան, համեստութեան, հնազանդութեան եւ անշահասիրութեան դէմ արատ մը չէ ունեցեր եւ քսանամեայ հասակն աւարտեր է՝ կրնայ սարկաւագ ձեռնադրուիլ ի ձեռն եպիսկոպոսի, առաջարկութեամբ միաբանից եւ հրամանաւ Կեդրոնական Վարչութեան։*

ՅՕԴ. 30. — *Սարկաւագութեան միջոցն առ նուազն երկու տարի պէտք է տեւէ, եւ ապա կրօնաւոր քահանայ եւ աբեղայ լինի։ Այս ժամանակամիջոցը պէտք է անխախտ պահուի ինչ հասակի եւ արժանեաց տէր ալ լինի ձեռնադրելին։*

ՅՕԴ. 31. — *Այն Թեմակալ եպիսկոպոսք որ միաբանութիւն պատսպարող վանք մը չունին իրենց վիճակին մէջ՝ կրօնաւոր սարկաւագ կամ աբեղայ չեն կրնար ձեռնադրել, որպէս զի առանց վանքի՝ կրօնաւորներ աստ եւ անդ չշատնան հակառակ նախնական սովորութեանց։*

ՅՕԴ. 32. — Վանական եւ եկեղեցական կարգի եւ կանոնի դէմ ըմբոստացող կրօնաւորք, սարկաւագ ըլլին թէ վարդապետ, յետ երկիցս եւ երիցս խրատելոյ երբ անուղղայ կը մնան, Թեմակալ եպիսկոպոսը յանցանքին չափով կը պատժէ, միաբանական իրաւունքէ եւ մինչեւ իսկ եկեղեցական հանգամանքէ կը զրկէ եւ անմիջապէս Կեդրոնական Վարչութեան Կրօնական Ժողովոյն տեղեկութիւն կուտայ։

Երբ յանցաւորը ծայրայեղ անուղղայութեամբ դայթակղութիւն կը դառնայ սուրբ կարգին, Պատրիարքին ծանուցանելէ եւ որոշումն առնելէ յետոյ բոլորովին կարգէն կը մերկացունէ եւ վանքէն ալ դուրս կը հանէ։ Այնուհետեւ այս ընկեցեալը ցկեանս աշխարող կը ճանչնայ բովանդակ եկեղեցին. ոչ այլ ոք վանահայր կամ Թեմակալ կրնայ զայն ընդունիլ Թեմին կամ վանքին մէջ, այլ իբրեւ հատեալ անդամ յեկեղեցական մարմնոյ կը մնայ հրապարակի վրայ։ Պատրիարքարանը ընկեցելոյն այս վիճակը հաւատացելոց զգուշութեան համար կը հրատարակէ։ Այս ընկեցելոց վրայ պսակ ամուսնութեան ալ չկրնար կատարուիլ։

ՅՕԴ. 33. — Ուրիշ Քրիստոնեայ եկեղեցեաց կրօնաւորներէն մեր Ազգային եկեղեցի փոխադրուիլ փափաքողներ, յետ բազում հաւաստի քննութեանց, եթէ Պատրիարքարանն հարկ դատի մեր եկեղեցականաց կարգըն ընդունիլ, անմիջապէս ազգային վանքերէն մին կը յուղարկէ, ուր առանձնացեալ կը բնակի առ նուազն երեք տարի, եւ կը մնայ այն հանգամանքով՝ որով որ եկաւ։ Յետ պայմանեալ այս ժամանակն աւարտելու՝ եթէ արժան դատի Թեմակալ եպիսկոպոսն կը դասաւորէ զայն 'ի կարգս իւր վանքի կրօնաւորաց եւ կը գործածէ 'ի պէտս վանքին եւ վիճակին, եւ միանգամայն կը ծանուցանէ Կեդրոնական Վարչութեան։

Նորադարձ կրօնաւորն առանձնութեան այս միջո-ցին իւր ապրուստը եւ հագուստը վանական արկղէն կը վայելէ, հաւասար վանքին սարկաւագաց եւ դպրաց։

ՅՕԴ. 34. — Վանական միաբանութեան մէջ, բը-նական իրաւանց վայելման կողմանէ կատարեալ հաւա-սարութիւն կը տիրէ։ Գնահատելի ծառայութեանց հա-մար երբ միաբան անդամ մը վարձատրել հարկ է՝ Թե-մական եպիսկոպոս Պատրիարքարանի կառաջարկէ եւ անոր ընդունած հրամանին համեմատ կը վարձատրէ։ ([17])

ՅՕԴ. 35. — Միաբանութիւնն մէկ հասարակաց գանձանակ եւ գանձապետ կունենայ, ուր կը հաւաք-ուին բոլոր այն նուէրք՝ զոր թէ 'ի վանս եւ թէ արտա-քոյ 'ի վիճակէ եւ կամ յայլուստ վանական վարդապե-տի ձեռք կը հասնի իբրեւ բարեպաշտական նուէր։ Բո-լոր այն վարձատրութիւնք դրամականք՝ որք վանքէն կը լինին միաբանի մը դասատու, հաշուակալ, մատակա-րար, նուիրակ, անօրէն Ժողովոյ անդամ, հիւրընկալ եւն ըլլալուն համար, այս հասարակաց գանձանակը պէտք է մտնէ։ Այն գումարներն իսկ՝ զոր Թեմական եպիսկոպոս իբրեւ վանահայր կընդունի վանքին մէջ յուխտաւորներէ իբրեւ պատարագուց եւն, պէտք է հասարակաց գան-ձանակը մտնէ։ Գանձապետը միաբանութեան Ընդհա-նուր Ժողովէն կընտրուի։

Գանձանակի մէջ հաւաքեալ հասոյթն պէտք է այս-պէս բաժնուի.

Ա. — Վարդապետք ամբողջ բաժին։

Բ. — Սարկաւագք ամբողջին մէկ չորրորդը։

Գ. — Փոխ-Վանահայր ամբողջէն կէս աւելի բաժին։

Իսկ Թեմական եպիսկոպոս կամ մեծ վանահայրն այս գանձանակին մէջ թէեւ արդիւնք ունի, սակայն բաժին չունի։ ([18])

ՅՕԴ. 36. — *Միաբան վարդապետք իրենց հագուստի եւ ձեռքի ծախուց համար իրենց գանձանակի բաժինն ունին, անով միայն պիտի հոգան։ Իսկ բնական սենեկին, անկողնոյն, լուացքի, ճրագի, ջերմութեան, ուսումնական գործեաց, հիւանդութեան ատեն բժշկի եւ դեղոց եւ բնական ապրուստի ծախուց համար վանքին արկղը պարտական է հոգալու։*

*Դպիրք բաժին չունին միաբանութեան գանձանակի մէջ, որոց բոլոր ծախքը վանքին դպրոցի մատակարարութեան ճիւղը պէտք է հոգայ։*

*Սարկաւագաց հանդերձներն վանքը կը հոգայ՝ երբ վանքին մէջ են, թեմական վանահայր եպիսկոպոսը կը հոգայ՝ երբ սորա քով կը ծառայեն։ Իսկ հասութից ամբողջ բաժնին մէկ չորրորդը թէ ներսն ըլլան եւ թէ դուրսը սարկաւագք միաբանութեան գանձանակէն պիտի ընդունին առձեռն անձնական ծախուց հոգացման համար։*

ՅՕԴ. 37. — *Միաբանք ինք իրենց յատուկ ծառայ կամ փոքրաւոր չեն կրնար ունենալ ոչ իրենց ծախքով եւ ոչ վանքին դրամով։ Ծառայք հասարակաց են։ Միայն փոխ-վանահայրը կրնայ յատուկ ծառայ կամ փոքրաւոր գործածել վանքին սարկաւագներէն կամ չափահաս դպիրներէն։*



# ԳԼՈՒԽ Ե.

## ՎԱԽՃԱՆԵԱԼ ԹԵՄԱԿԱԼ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

## ԵՒ

## ՎԱՆԱԿԱՆԱՑ ԳՈՅԻՑ ՎԻՃԱԿԸ

......

ՅՕԴ. 38. — Թեմակալ եպիսկոպոս մը՝ որ միանգամայն վանահայր է իւր վիճակին՝ երբոր վախճանի, բոլոր գոյքը, շարժուն թէ անշարժ, գիրք, դրամ, կալուած, հանդերձեղէն, կարասիք վանքին պէտք է մնան. Իսկ եթէ հանդուցեալն վանքին կամ վիճակին հոգեւոր եւ կրթական մէկ օգտին համար կտակ ունեցած ըլլայ, յարգելի է կտակն, պէտք է 'ի գործ դրուի ամենայն բարեխղճութեամբ. սակայն իւր վանքին եւ վիճակէն դուրս ուրիշ բարեպաշտական հաստատութեանց վրայ կտակ չկրնար ընել.

ՅՕԴ. 39. — Եթէ Թեմակալ եպիսկոպոսը վիճակին մէջ վանք չունի եւ վանահայր ալ չէ միանգամայն, ապա գոյքը ըստ առաջնոյն Պատրիարքարանի կը մնայ եւ ոչ վանքին՝ որում միաբանն էր երբեմն. Սակայն, եթէ բարեպաշտական կտակ մ'ունենայ իւր թեմին վրայ հոգեւոր եւ կրթական նպատակաւ՝ կտակն յարգելի է.

ՅՕԴ. 40. — Վանական կրօնաւորաց գոյքն, ըստ ամենայն տեսակաց, յետ վախճանի նոցա բոլորովին կը պատկանի միայն այն վանքին՝ որոյ միաբանն էին. Կըտակաւ կարգադրութիւն բնաւ չընդունուիր. Ժառանգորդ ալ չեն ճանչցուիր.

ՅՕԴ. 41. — Վանական մը՝ որ ծագմամբ ուրիշ վանքի կը պատկանէր, եւ վանքէ վանք անդամափոխութեամբ փոխադրուած է վերջապէս վանք մը եւ յետ երեքամեայ փորձոյ ի կարգ նոյն միաբանից ընդունուեր է, եւ վանքին ու անոր վիճակին մէջ հինգ ամ ծառայելէ յետոյ վախճաներ է, սորա բոլոր գոյքը վանքին կը մնան՝ յորում վախճանեցաւ։ Իսկ եթէ հինգ տարին չէ լրացուցած՝ կէսը կը պատկանի վանքին՝ ուր վախճանեցաւ, միւս կէսն ալ վանքին՝ որոյ երբեմն սկզբնաբար անդամ էր։ Կտակ եւ ժառանգորդք չճանչցուիր։

ՅՕԴ. 42. — Այս կանոնին տակ չեն իյնար եկեղեցիներուն փոխաղ կրօնաւորաց գոյքն։ Որ ինչ թողուն ի վախճանի՝ բոլորն կը մնան վանքին՝ յորում պատսպարեցան։



## ԳԼՈՒԽ Ե.

## ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՔ

## ԹԵՄԱԿԱԼ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

······

Թեմակալ եպիսկոպոսն երեք ճիւղ յարաբերութիւն ունի.

1. — Ընդ Կեդրոնական Վարչութեան.
2. — Ընդ Վիճակին՝ սահմանադրապէս.
3. — Ընդ Վիճակին՝ հոգեւորապէս.

# Ա.

## ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆ

### ԸՆԴ

## ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

ՅՕԴ. 43. — Թեմական առաջնորդն իւր վիճակէն դուրս թեմին ազգային եւ քաղաքական խնդրոց համար Պատրիարքարանէ ուրիշ տեղ յարաբերութեան շաւիղ բնաւ չունի. (19)

ՅՕԴ. 44. — Թեմական առաջնորդն եթէ խնդիր մը զուտ ազգային է՝ իւր թեմին Խառն ժողովոյն եւ գաւառային ժողովոյն բոլոր ջանքերն եւ խորհուրդները չսպառած՝ պէտք չէ՝ որ Պատրիարքարանի դիմէ. Պատրիարքարան դիմելու ատեններն թեմին մէջ ըրած օրինական ջանքերնին պէտք է մանրամասնօրէն պատմելով ստորագրեն եւ այնպէս ներկայացնեն խնդիրը. Իսկ եթէ քաղաքական է՝ թեմին Քաղաքական ժողովոյ հետ ի միասին տեղական իշխանութեան առջեւ ամեն ջանք սպառելէ յետոյ՝ դիմել ի Պատրիարքարան՝ Բ. Դըռան կառավարութեան ներկայելու համար. (20)

ՅՕԴ. 45. — Թեմական առաջնորդս Պատրիարքարանէ ընդունած հրամանը ամենայն փութով եւ հաւատարմութեամբ պէտք է կատարէ. Երբ չկատարեր, առաջին անգամ դիտողութիւն կը լսէ, երկրորդ անգամ գաւառի Երեսփոխանական ժողովոյ՝ դիւանէն բացատրութիւն կը պահանջուի Պատրիարքարանէն, երրորդ անգամին իբրեւ Ազգային Կեդրոնական իշխանութեան անհնազանդ եւ գայթակղեցի օրինակ՝ պաշտօնէն կը մեր-

ժամի, վանք կը յղուի անպաշտօն ; եւ տեղը առժամանակեայ Պատրիարքական Փոխանորդ մէկը ղրկուի, մինչ Պատրիարքարանին հրամանին դէմ եղած վարմունքը յետոյ կոչմամբ դարմանէ ։

ՅՕԴ. 46. — Ըմբոստութեան այս տեսակ դէպքը Կոստանդնուպոլսոյ Կեդրոնական Վարչութեան Խառն Ժողովոյ մէջ վայելչապէս քննուելէ եւ դատապարտութիւն կրելէ յետոյ կրնայ վանք մը ղրկուիլ, եւ կամ անպաշտօն կերպիւ եկեղեցեաց մի խցի մէջ բնակիլ ։

ՅՕԴ. 47. — Թեմակալ եպիսկոպոսն իւր թեմին մէջ հանգանակութիւններն այսպէս կը կատարէ. Թաղին կամ գիւղին եկեղեցւոյն եւ դպրոցին շինութեան եւ մատակարարութեան համար նոյն գիւղի ժողովրդեան մէջ հանգանակութիւն կատարելու հրաման տալու է, երբ նոյն գիւղի ժողովրդեան կարողութիւնը չ՚բաւէր, իւր թեմի վրայ կրնայ հանգանակութեան հրաման տալ գաւառին Խառն Ժողովով. Երբ հրդեհի կամ սովու ծանըր աղէտ մը պատահելով թեմն իսկ անբաւական լինի, յայնժամ Պատրիարքարանի կառաջարկէ, եւ ընդհանուր հանգանակութեան դիմելու արտօնութիւն կը խնդրէ ։

ՅՕԴ. 48. — Որ եւ է թեմի մէջ ուրիշ թեմի օգտին համար հանգանակութիւն չկրնար ըլլալ առանց Պատրիարքական Կոնդակի ։ Ուստի իրաւունք ունին թեմակալք չընդունելու այնպիսիներ՝ որ նպաստի խնդրով կուգան իրենց թեմն՝ բայց Պատրիարքարանէն կոնդակաւ հրաման չունին ։

# ԷԲ.

## ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆ

## ՍԱՀՄԱՆԱԴՐԱՊԷՍ ԸՆԴ ԹԵՄԻՆ

ՅՕԴ. 49. — *Թեմակալ առաջնորդն պարտաւոր է իբրեւ ազգային վաւերական օրինագիրք Սահմանադրութիւնը ճշդիւ գործադրել, այսինքն անօրինել՝ որ ոչ մի Թաղ կամ գիւղ առանց Թաղ. Խորհրդոյ մնայ, եւ դպրոցներն առանց մասնաւոր հոգաբարձութեան։*

ՅՕԴ. 50. — *Թեմակալ առաջնորդն գոնէ երեք ամիսն անգամ մը Թաղական Խորհուրդներէն իրենց եկեղեցւոյն, դպրոցին եւ Թաղին կամ գիւղին ազգաց վիճակին, արքունի տուրք բաշխման, գանձման եւ վճարմանց, գիւղէն գաղթող ժողովրդեան թուոյն եւ գաղթելու պատճառներուն, եւն վրայ մանրամասն տեղեկագիր ուզէ։ Տեղեկագիրն պէտք է ստորագրեալ ըլլալ ի Թաղական Խորհրդոյ ամբողջովին եւ աւագերէց քահանայէն ալ վաւերացեալ։* (21)

ՅՕԴ. 51. — *Թեմական դպրոցաց մէջ Թաղականք իրենք իրենց գլխուն ձեռքերնին անցած դաստատուն-վարժուհին եւ դաստիարակը գործածելու չեն՝ մինչեւ որ Թեմական կեդրոնի Ուսումնական Խորհրդէն նոյն դաստիարակը քննուած, արժանեաց եւ յարմարութեանց վրայ փորձ եղած եւ առաջնորդին հրամանի թղթով արտօնուած չըլլայ։* (22)

ՅՕԴ. 52. — *Թեմակալ առաջնորդը պէտք է տարին անպատճառ երկու անգամ գաւառային Ընդհանուր Ժողով գումարէ։*

ՅՕԴ. 53. — Թեմական վանքերն աբեղայք եւ վարդապետք հաւասար Թեմական քահանայից Երեսփոխանական Ժողովոյ Կրօնական մասին անդամ ընտրուելու իրաւունքն ունին։

ՅՕԴ. 54. — Թեմակալ եպիսկոպոսն իւր անձնական ծախուց համար գաւառային սնտուկէն ամսական չպիտի ընդունի, այլ ամբողջովին յանուն առաջնորդութեան գանձուած հասոյթին տէրն է։ Առաջնորդարանի մէջ իւր անձնական ծախքը, եւ Թեմին հոգեւոր հովուութեան համար գործածելի վարդապետաց ծախքը իւր հասոյթէն պիտի հոգայ։ Պատրիարքարանի մուգաթայի տուրքն ալ ըստ սահմանելոյն ինք պիտի վճարէ իւր հասոյթէն, եւ Պատրիարքարանէ ընդունած ընկալագիրն արձանագրել պիտի տայ վիճակին Քաղաքական Ժողովոյ արձանագրութեան մէջ։ (23).

## Գ.

## ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆ

## ՀՈԳԵՒՈՐԱԳԼԽՈՅ ԸՆԴ ԹԵՄԻՆ

ՅՕԴ. 55. — Թեմակալ եպիսկոպոսը ժողովրդեան ընտանեկան կենաց հիմը լաւ դիտելու է, հոգ տանելու է՝ որ ամուսնութեան առջեւ դժուարութիւն հանող ո՛ր եւ է արգելքներ բառնայ։ Կանխահաս նշանադրութեանց արգելք ըլլայ, նշանադրութեան եւ ամուսնական պսակի միջոցը տասն եւ հինգ օրն չանցունէ, որպէս զի վայրապար ծախքեր չունենան այս առթիւ։ Իւրաքանչիւր Թեմ իրենց մէջ հարսանեկան եւ այլ ծախքերու ձեւեր

կունենան, այդ ծախքերը վերցնելով՝ ամուսնութիւնը դիւրացնող միջոցներ օրինադրելու եւ խրախու հսկելու է։

ՅՕԴ. 56. — *Թեմակալ եպիսկոպոսը թոյլ տալու չէ՝ որ, առանց իւր մասնաւոր պաշտօնական հրամանին, որ եւ է քահանայ, վարդապետ, եպիսկոպոս թէեւ ունենայ Պատրիարքական հրաման կամ կոնդակ 'ի ձեռին՝ թեմին եկեղեցեաց մէջ պաշտօն վարէ։*

ՅՕԴ. 57. — *Թեմակալ եպիսկոպոսն* մասնաւոր *իշխանութիւն դատաւորի կուտայ այն թեմական աբեղայից՝ որոց ձեռնադրութեան թուականը երեք տարին լրացեր է եւ հաւատացելոց Աստուծոյ բանը քարոզելու բաւականութիւն ունին։ Իսկ* ծայրագոյն *իշխանութիւն քաւածը կուտայ այն վարդապետի՝ որ կամ փոխանորդն է իւր վանահայրութեան կամ փոխանորդը եւ ներկայացուցիչն է իւր առաջնորդական պաշտաման 'ի վիճակի։*

*Եկեղեցւոյ քահանայից մէջ նախապատիւ ձեռնադրեալն եւ որ արժանիք ունի միւս կարգակից քահանայները կառավարելու* ամազերկց *կանոնանէ․ իսկ քահանայական դասակարգի չպատկանող քահանային աւագերէց տիտղոս չ'տար։*

ՅՕԴ. 58. — *Թեմակալ եպիսկոպոսը պէտք է վեց ամիսն անգամ մը ծննդոց եւ վախճանմանց ցուցակը առնէ եւ բերել տայ քահանայներէն եւ կեդրոնական դիւանի արձանագրութեան մէջ արձանագրել տայ իւրաքանչիւրին գիւղին կամ թաղին համար բացուած յատուկ դաւտարին մէջ։*

ՅՕԴ. 59. — *Թեմակալ եպիսկոպոսն ամեն կիւրակէ առաւօտ եւ տօնի օր յետ արձակման եկեղեցւոյ բա-*

լոր քահանայներն անպատճառ մէկ ժամի չափ իւր ներկայութեանն ընդունի յառաջնորդարան, և անոնց հետ վարդապետական, հովուական, արարողական և ծխական բարեկարգութեանց վրայ խօսի, թերութիւններ եթէ ունին ուղղէ, և տայ իւրաքանչիւրն իւր տուն երթալ։ (24)

ՅՕԴ. 60. — Թեմակալ եպիսկոպոսն պէտք է քահանայներէն տարին անգամ մը ժողովրդեան ներքին հոգևոր և բարոյական վիճակին վրայ ընդհանուր տեղեկագիր ընդունի, յորմէ իմանայ՝ թէ իւր հօտին հոգևոր կեանքը առո՞ղջ թէ հիւանդ է, և ըստ այնմ փութայ իւր հոգևոր խրատներն և յանդիմանութիւններն ուղղել։

ՅՕԴ. 61. Թեմակալ եպիսկոպոսն տարին անգամ մը իւր թեմին նիւթական, կրթական և հոգևորական վիճակին վրայ մանրամասնօրէն տեղեկագիր յօրինելով՝ մէկ օրինակը պէտք է Պատրիարքարան յուղարկէ, մէկ օրինակն ալ իւր թեմի դիւանատան մէջ պահպանել տայ զգուշութեամբ։

ՅՕԴ. 62. — Որ գիւղի մէջ որ քահանայ ուզուի, պէտք է թեմակալ եպիսկոպոսն երկու տարի առաջ իմանայ, ի ձեռն քահանայից և թաղին երեւելեաց, և ներկայացուած անձին հրամանաւ ուրարակրութիւն տայ, որպէս զի եկեղեցական պաշտամանց և ծխից մէջ կանխաւ վարժութիւն ընէ, քահանայական պաշտաման կարևոր ուսանելիքներուն տեղեկանայ և յետոյ ձեռնադրուի։

ՅՕԴ. 63. — Գիւղի մը ժողովրդեան չափով քահանայ ձեռնադրելու է թեմակալն։ Գիւղերը ավերաբար

փոքրաթիւ ժողովուրդ կունենան, իսկ աւաններն եւ քաղաքներն բազմաթիւ։ Եպիսկոպոսը գիւղի մը մէջ երբ 75 տունէ աւելի ժողովուրդ չունենար, միայն մէկ քահանայ հաստատուելու է անոր վրայ, երբ 150 տուն կը անցնէ երկու հատ, եւ այսպէս հետզհետէ։ Իսկ քաղաքներու մէջ մէն մի 100 ընտանեաց մէկ քահանայ ձեռնադրուելու է անխափան։ Մինչեւ որ քահանայ մը չվախճանի եւ անոր ժողովուրդը առանց քահանայի չմնայ՝ ուրիշ մը բնաւ չձեռնադրէ։ (26)

ՅՕԴ. 64. — Առ հասարակ բոլոր քահանայից եկեղեցւոյ մէջ կատարած հոգեւոր արարողութեանց փոխարէն տրուած հասութին ոչ չափ կրնայ դրուիլ ոչ կանոն. ինչ որ ժողովուրդը կուտայ թէ պատարագաց, թէ հոգեհանգստեան նուէր եւ թէ գանձանակի շրջաբերութենէ, քահանայք հաւասարապէս պէտք է բաժնեն իրենց մէջ։ Այս կանոնը պէտք է պահուի բոլոր եկեղեցեաց համար։

ՅՕԴ. 65. — Իսկ ժողովրդեան բնակած քաղաքաց եւ գիւղից համեմատ արտաքոյ եկեղեցւոյ քահանայից յատկացեալ ծխական հասոյթն աս կանոնով պէտք է գանձել։

Ա. — Մայրաքաղաքի մէջ քահանայից հովուական հասոյթն է.

'Ի նշանադրութենէ .................... 50 Դահ.
'Ի պսակադրութենէ .................... 100 »
'Ի թաղմանէ,
Առաջին դասու ընտանեաց հայր մը երբոր
վախճանի .................... 500 »
Երկրորդ աստիճան .................... 300 »
Երրորդ » .................... 100 ».

Առաջին դասու ընտանեաց ամուրի անդամ
մը երբոր վախճանի ........................ 300 Դահ.
Երկրորդ դասու ........................ 100 »
Երրորդ » ........................ 50 »

Թաղման եւ պսակադրութեան ժամանակ ըստ կամի ընտանեաց՝ որքան եկեղեցական որ հրաւիրուի՝ խնդրող ընտանիք որ ինչ կամին զայն կուտան միւս հոգեւորականաց, ըստ կարգադրութեան՝ որ կը լինի 'ի ձեռըն տանուտէրց քահանային.

Տարեկան տուրք սահմանեալ քահանային ապրուստին համար՝ այս է.

Առաջին դասու ընտանիք........................ 300 »
Երկրորդ » » ........................ 200 »
Երրորդ » » ........................ 100 »

Կարող եւ աւելի վճարելու բարեյօժար ընտանեաց առատաձեռնութեան չափ չդրուիր։ Փոխարէն այս կամաւոր առատաձեռնութեան՝ զոր կը վայելէ քահանայն Իւր առաջնակարգ ծուխերէն՝ իւր խնամոց յանձնեալ աղքատ եւ կարօտ ընտանեացմէ հոգեւոր հովուութեան տուրք չընդունիր։

Բ. — Առաջնորդանիստ քաղաքաց մէջ քահանայից հովուական հասոյթն է.

'Ի նշանադրութենէ ........................ 50 »
'Ի պսակադրութենէ ........................ 100 »
'Ի թաղմանէ առաջին դասու ընտանեաց-
մէ երբ ամուսնացեալ է ........................ 100 » (27)
'Ի թաղմանէ առաջին դասու ընտանեաց-
մէ երբ ամուրի է ........................ 50 »
'Ի թաղմանէ յերկրորդ դասու ընտանեաց-
մէ երբ ամուսնացեալ է ........................ 50 »
Ի' թաղմանէ յերկրորդ դասու ընտանեաց-
մէ երբ ամուրի է ........................ 30 »

'Ի թաղմանէ յերրորդ դաս ընտանեաց-
մէ երբ ամուսնացեալ է ........................ 30 Դահ.
'Ի թաղմանէ յերրորդ դաս ընտանեաց-
մէ երբ ամուրի է ........................ 20 »
Իսկ տարեկան հասոյթ հովուութեան,
Առաջնադաս ընտանիք ........................ 100 »
Երկրորդ դասու ընտանիք ........................ 50 »
Երրորդ » » ........................ 30 »

Աղքատներէն բան մը չընդունելու հովուութեան համար, իսկ աղքատաց թաղման ծախուց համար եկեղեցւոյ գանձանակէն վճարելի է քահանային 20 դահեկան։

Գ. — Գիւղական քահանայից հովուական հասոյթքն. (28)

'Ի նշանադրութենէ ........................ 10 Դահ.
Ի' պսակադրութենէ ........................ 50 »
'Ի թաղմանէ առաջին դաս ընտանիքէ
եթէ ամուսնացեալ է ........................ 40 »
'Ի թաղմանէ առաջին դաս ընտանիքէ
եթէ ամուրի է ........................ 20 »
'Ի թաղմանէ երկրորդ դաս ընտանիքէ
եթէ ամուսնացեալ է ........................ 30 »
'Ի թաղմանէ երկրորդ դաս ընտանիքէ
եթէ ամուրի է ........................ 10 »
'Ի թաղմանէ երրորդ դաս ընտանիքէ
եթէ ամուսնացեալ է ........................ 20 »
'Ի թաղմանէ երրորդ դաս ընտանիքէ
եթէ ամուրի է ........................ 5 »
Իսկ տարեկան հասոյթ
Առաջնադաս ընտանիք ........................ 30 »
Երկրորդ դասու ընտանիք ........................ 20 »
Երրորդ դասու ընտանիք ........................ 10 »

ՅՕԴ. 66. — Երբ քահանայ մը վախճանի անոր եկեղեցական գոյքը՝ խաչ, մասունք, մաշտոց, աւետարան, փիլոն, եկեղեցւոյն կը պատկանի. իսկ ժողովուրդը առաջնորդին սեպհական ծուխ կը լինի եւ կըսուի Տէրունի. Առաջնորդը այս տէրունի ժողովուրդը կը յանձնէ նոյն թաղի եկեղեցւոյ քահանայներէն միոյն հովուութեան. Հասութին կէս բաժինը՝ միայն մէկ տարի՝ վախճանելոյն այրի երէցկնոջ եւ որբոցն կը յանձնէ 'ի մխիթարութիւն. Տարիէ մը յետոյ առաջնորդը ուրիշ քահանայ կը ձեռնադրէ ըստ խնդրոյ ժողովրդեան եւ անոր կը յանձնէ նոցա հովուութիւնը. Ցորչափ քահանայ ձեռնադրուած չէ այն մասն մի ժողովրդեան վրայ՝ նոցա հովուութեան կէս բաժին հասոյթը առաջնորդին սեպհական է.

ՅՕԴ. 67. — Քահանայն ինքն իրեն ժողովուրդը սեպհականելու, ժողովուրդն ալ ինքն իրեն քահանայ ընտրելու կամ փոփոխելու իրաւունք չունի.



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Ցորչափ կենդանի է Թեմին վրայ ձեռնադրեալ եպիսկոպոսն՝ զայլ ոք կարգել կամ ձեռնադրել տալ՝ եպիսկոպոսական կարգի կրօնական անեղծանելիութիւնը ջնջել է։ Եպիսկոպոս մը հերքելի կամ կարգն իրմէն ջնջելի է միայն՝ երբ հերետիկոս կամ հերձուածող ըլլայ եւ ընդհանրական Հայրապետի վճռով հերքուի։ Ժամանակ մը կաթողիկական յուզմունք, յետոյ քաղաքական խլրտմունք, յետոյ սահմանադրական Վարչութեան կէս մը թերի, կէս մը անընտել, մեծաւ մասամբ ազգային սովորութեանց անյարմար հրահանգներ եւ պահանջողութիւններ եպիսկոպոսներն չարաչար տեղափոխելու վիճակին հասուցած են։

2. Թեմին Պատրիարքական Փոխանորդն նոյն Թեմին վանականներէն առնուիլն պատշաճ է, օգտակար է, հարկաւոր է։ Պատշաճ, վասն զի ՚ի հեռուստ մէկը բերել արհամարհանք ըսել է մերձակայ վանքի վանականաց։ Պատշաճ է պատիւ տալ վանքին եւ անոր վանականաց որ նոյն վիճակի մէջն են. ուրիշ բան է՝ եթէ վանականք իրենք խնդրեն որ Պատրիարքարանն զայլ ոք ղրկէ՝ գիտնալով՝ թէ իրենց մէջ արժանաւոր մէկը չկայ։ Օգտակար է, վասն զի այն վանականք իրենց վիճակին մէջ ելեւմուտ ըրած եւ հոգեւոր քարոզութեամբ եւ աշխատութեամբ շրջած ըլլալով՝ վիճակին եւ վանքին բոլոր գործոց տեղեակ են։ Անկէց զատ վանքն ու վիճակ սերտ յարաբերութեան մէջ պահելու լաւագոյն միջոցն է։ Հարկաւոր է, զի գուցէ փորձուին վանականք առաջին օրէն իրենց եղած անարգանքին դէմ զայրանալ, եւ վիճակային գործոց մէջ չաջակցիլ։ Անկէց զատ

երբ վանականք գիտնան թէ իրենց թեմի ընտրելին իրենցմէ չէ, անհող, թոյլ, մեկուսի կենցաղով կը մնան վանքի մէջ, յօժարութիւն չեն զգար մօտակայ ժողովրդեան աչքին երեւիլ, քարոզութեամբ շրջիլ, համարումն եւ ծանօթութիւններ շահիլ։ Ժողովրդեան աչքը, քննադատութիւնը ժողովրդեան մէջ գործածելն է, որ լռելեայն զեկեղեցականը կը հրահանգէ։

3· Քանի որ թեմն իրեն անծանօթ մի վարդապետ պիտի ընտրէր, Պատրիարքարանն քան զթեմականըս աւելի լաւ գիտէ թէ՝ ո՞ր վարդապետ աւելի արժանապէս կրնայ վայելուչ ըլլալ թեմին։

4· Եկեղեցին իւր իշխանութիւնը, ըստ որում հոգեւոր է, ժողովրդեան քաղցր բերելու համար, պաշտօնէից ընտրութիւնը գրեթէ յերկրորդ դարէ 'ի վեր սովորութիւն ըրած է ժողովրդեան ձգել։ Ցեկեղեցական հնաւանդ սովորութենէ է այս եղանակը պահելու հարկը, 'ի վարդապետութենէ չէ, զի եթէ այսպէս ըլլար, առաքելական թղթոց մէջ հովիւներն ընտրելու պատուիրան ալ կը կենար, ինչպէս որ պատուիրաններ կան մինչեւ առտնին կենաց կերպերուն համար։ Սակայն հնաւանդ սովորութեան ալ հաւատարիմ մնալնիս եթէ հարկ է, ինչպէս որ էր 'ի սկզբան այս սովորութիւնն, նոյնպէս պահել պէտք է։ Ժողովուրդ մը՝ անձ մը իրեն եպիսկոպոս խնդրելով է՝ որ իւր ընտրողութեան իրաւունքը յերեւան բերած կըլլայ՝ եւ ոչ թէ առանց ձեռնադրութեան վարդապետ մը իւր վրայ հովիւ բերելով։

5· Մէկ տարին բաւական համարելնիս անոր համար է՝ որ վիճակայինք կանխաւ իրենց փորձն առած ըլլալով՝ փորձ մը միայն կը մնար առնել, այսինքն թէ արդեօք երբ իշխանութեան գլուխ անցնի, հարկ եղած

քաջութիւնը, հաստատամտութիւնն եւ օրինապահութիւնն պիտի ունենա՞յ։ Այս փորձին համար մէկ տարին բաւական է, բնիկ վարդապետին համար, զի արդէն տեղացի ըլլալով. տեղեակ էր բոլոր անկարգութեանց եւ խելամուտ էր արդէն այն բոլոր միջոցներուն՝ որովք կարելի էր անկարգութիւնը բառնալ։ Իսկ դրսէն գացող մը լիապէս փորձուելու համար, գոնէ երեք տարի պաշտօն վարելով ծանօթանալու է ամեն բանի։

6․ Սահմանադրութեան Երեսփոխանական Ժողովոյ ընտրութեամբ ժամանակաւոր պաշտօնեայ ընտրուիլն հասկանալի է, բայց հոգեւորական մեծ պաշտօնէի մը ընտրութեան խնդրոյն մէջ եկեղեցականաց բոլոր ձայնից միացումն եկեղեցական հարկ մ՚է։

7․ Թեմական եպիսկոպոսաց աշխարհավարական գործոց ընթացքը կը պահանջէ՝ որ ամեն խնդիր իրենց քաղաքի իշխանութեան հետ լմնցունեն։ Սակայն, ինչպէս բնական է, քաղաքային փոքր իշխանութիւններ ամեն խնդիր ինքնին չկրնալով լմնցունել՝ կը դիմեն իրենցմէ վերագոյն իշխանութեան։ Այս դէպքի մէջ Թեմակալն ալ կը պարտաւորի խնդրոյն ետեւէն երթալով դիմել Նահանգային եպիսկոպոսի միջնորդութեան։ Արդ, որովհետեւ բնական այսպիսի կախումն կայ, պատշաճութիւն մ՚է՝ որ Նահանգային եպիսկոպոսը Նախագահէ ժողովոյն, հսկէ ընտրութեան օրինաւորութեան վրայ, ինքն իսկ սկիզբէն համակրի ընտրելոյն, համակերպի գործոց այն առաջնորդարանին՝ յորմէ իրեն շատ անգամ խնդիրք եւ յանձնարարութիւնք պիտի գան։ Այս կերպով բարոյական կապակցութեան հիմն կը դրուի Նահանգին եւ գաւառին Եպիսկոպոսաց մէջ։

8. *Քանի անգամ Թեմականք փոփոխումն ուզէ եւ օրինաւոր պատճառ ներկայացունեն, պէտք է որ Պատրիարքարանն փոխէ, բայց ամեն փոփոխեալք եպիսկոպոս լինելու համար անպատճառ պէտք է երեք տարին լրացնեն, մինչեւ որ Թեմն իւր ուզած հովիւը, հովիւն ալ իւր կարողութեան տանելի եղած ասպարէզը գտնէ, որպէս զի յետոյ մէկը կամ միւսն իւր ընտրութեան մէջ զինքը խաբուած չգտնէ կամ անճարացած չըլլայ։ Կրնայ ըսուիլ՝ թէ այսչափ խստութիւն շատ է, թեմն առանց եպիսկոպոսի մնալով օտար դաւանութեան գործակատարներ իրենց եպիսկոպոսական չքով աւելի փայլուն եւ առաջնակարգ կը լինին կառավարութեան ժողովոց մէջ։ Խոհեմութիւնը կը պահանջէ՝ ոչ թէ հակառակորդին հընարքներուն դէմ խորհիլ, այլ ինչ որ էապէս քու բաժին պարտաւորութիւնն է՝ անոր մէջ թերութիւն չգործել։ Կառավարութեան ժողովոց առջեւ եպիսկոպոսին եպիսկոպոսութիւնը չէ որ փայլուն եւ արդիւնական է, այլ խելահասութիւնն եւ քաղաքագիտութիւնն։*

*Քանի որ ժողովրդեան ընտրական իրաւունքը կայ, եւ Պատրիարքարանն ուրիշ եկեղեցեաց, Յունաց եւ Կաթոլիկաց պէս չ՚կրնար հովիւն ինք ընտրել, Եպիսկոպոս ձեռնադրել եւ ղրկել, այս կերպէն ուրիշ եղանակ չկայ վարուելու։ Եթէ ժողովուրդը պիտի ընտրէ՝ պէտք է գիտնալով եւ փորձելով ընտրէ. գիտնալն եւ փորձելն ալ մեր նշանակած կերպովը կրնայ ըլլալ, ուրիշ հնարք չ՚կայ։*

9. Անպաշտօն *կըսուին անթեմ եպիսկոպոսներ՝ որ պատահմամբ կը գտնուին Պատրիարքարանի իրաւասութեան երկիրներին կամ իբրեւ հիւր կամ իբրեւ անցորդ, եւ Ս. Էջմիածնի կամ ուրիշ աթոռոց, զոր օրինակ Սսոյ, Երուսաղէմի եւ Աղթամարայ միաբաններ կը լինին։*

10. Արդարութեան եւ եկեղեցական բարեկարգութեան պայմանք կը պահանջեն չ'թողուլ՝ որ հոգեւոր իշխանութիւնը կարգ մը եսասէր եւ շահասէր մարդոց ձեռքը խաղալիկ լինի։ Զի միամիտ ամբոխին իրենց եպիսկոպոսին դէմ զինելու պատահմունքներին մէջն այս մարդոց երեսէն կը ծագի։

11. Պատճառն որ Եպիսկոպոսի մը համար կասկածանքն ալ յանցանք է, թող խոհեմ եւ զգուշաւոր վարուած լինէր, եւ տեղի չ'տար տարապարտ դիտողութեանց։

12. Նկատելի է՝ որ գիւղերն բաղդատմամբ քաղաքաց աւելի ծախքեր ունին։ Նախ՝ որ գիւղերը կեդրոնէն հեռի ըլլալով արքունի տուրց գանձման եւ հատուցման մասնաւոր ծախք ունին. երկրորդ՝ գիւղացւոյն անտեսական կեանքը աւելի ծախքեր ունի՝ զոր քաղաքացին չունի, կամ եթէ ունի՝ իւր արուեստին կամ վաճառքին վրայ դնելու պատեհութիւնն ունի զոր գիւղացին չունի. երրորդ՝ գիւղերը փոքրաթիւ բնակիչներէ բաղկանալով՝ կրօնական եւ կրթական պիտոյից համար համեմատաբար աւելի ծախքեր ունին քան զքաղաքացիս. չորրորդ՝ գիւղերը իրենց մերձակայ վանքերուն պտղի ըսուած տուրք մը կու տան, մինչդեռ քաղաքացիք իբր թէ պտուղ, այսինքն ցորեան, գարի, անասուն եւն չունին՝ բան մը չեն տար. հինգերորդ՝ գիւղացիք առաջնորդին այցելութեան ատեն կերակրոյ եւ երթեւեկի ծախքը կու տան, մինչդեռ քաղաքացիք այս ծախքն ալ չունին. վեցերորդ՝ գիւղացիք իրենց ժամատունը կը շինեն, կը կահաւորեն։ Ի՞նչու ուրեմն քաղաքացիք իրենց առաջնորդարանը չ'շինեն, չկահաւորեն, եւ թղթակցութեանց դիւանին ծախքերը իրենք չհոգան։

13․ Սահմանադրութեան 18րդ. յօդուածը թէպէտ եւ կը տրամադրէ՝ որ իւրաքանչիւր միաբանութիւն իւր վանահայրն ինք պիտի ընտրէ, սակայն այս յօդուածի տրամադրութեան հոգին պահուած է՝ այս կանոնադրի մէջ, նախ՝ որ Թեմական եպիսկոպոսը պիտի առնուի միաբանութեան մէջէն, երկրորդ՝ որ Թեմական եպիսկոպոսի եպիսկոպոսացման խնդրոյն մէջ վանականք ալ պիտի մասնակցին իրենց ստորագրութեամբ։

14․ Այս կանոնի մէջ Թեմական եպիսկոպոսն եւ միաբանութիւնք իրարու քօնթրօլ եղած կը լինին։ Եպիսկոպոսը կ'զգուշանայ ձեռք դպցունել վանական հասութին, միաբանութիւնն ալ յանդիման աչաց եպիսկոպոսին կ'զգուշանայ վանական հասոյթը յումպէտս գործածելու։

15․ Վանքին պահապան, վերակացու եւ մատակարար լինել վանականին իրաւունքն է։ Այս իրաւանց հակառակ՝ Թեմերէն ոմանք աշխարհական տեսուչներ կարգած են վանքերուն, հետեւանքը այն եղած է՝ որ ժողովուրդը սկսած է ցրտանալ վանքին ողորմութիւն տալէ, տեսնելով՝ որ վանքին մէջ փոխանակ կրօնաւորի աշխարհական վերակացու կայ։ Գիտնալ պէտք է՝ որ մեր ժողովուրդը վանքը կրօնաւորին եւ կրօնաւորը վանքին ապրանքն է գիտէ․ վանքին բան մը նուէր տալուն մէջ կենթադրէ՝ թէ կրօնաւորին կուտայ, կրօնաւորին տալու ժամանակ նոյնպէս կենթադրէ՝ թէ վանքին կուտայ։

16․ Թեմերուն մէջ այլ եւ այլ տեղեր վանքեր կամ Կրօնական հաստատութիւններ կան, որոց հասոյթք մօտակայ քաղաքացիք իրենց դպրոցաց ծախուց կը գործածեն, եւ Կոստանդնուպոլսոյ մէջ կազմեալ ընկերութիւնք, անգիտակ այն բնական պատրաստի յարմարու-

թեանց, իրենց կողմանէ վարժապետ կը վարձեն կը ղըր կեն. Տնտեսութեան ամենէն յայտնի պայմաններուն հակառակ է, կեցած բարիքը անտեսել, ի հեռուստ բանավար ջանքեր ընել.

17. Որպէս զի Պատրիարքարանը իւր նոր սահմանած վիճակացոյց տումարին մէջ արձանագրել տայ եկեղեցական վանականի գնահատել հանգամանքը եւ վարձատրուած ըլլալը.

18. Այս կանոնին նպատակը սա է.

Նախ՝ որ Թեմական վանահայրն միաբանութեան հասարակաց գանձանակին կարօտ չէ.

Երկրորդ՝ որ վանականք ուղղակի թէ անուղղակի իւր գործոյն աշխատակիցներ են.

Երրորդ՝ որ Թեմական եպիսկոպոսն երբ հասարակաց գանձանակին մէջ բաժին չունենայ՝ վանքին սեպհականութենէն այն գանձանակի մէջ անիրաւ անցումներուն տեղի չտալէ զատ՝ անկախ հսկողութիւն մ'ունեցած կըլլայ՝ թէ վանքին արկեղ եւ թէ միաբանութեան գանձանակին վրայ.

19. Վերջին ատեններս անկարգ եւ պարտազանց Թեմականներ քաղաքական խնդրոց համար ուղղակի թըղթով կամ հեռագրաւ յարաբերութիւն կընեն մինչեւ արքունի պալատան հետ. միջոց մը՝ որ Պատրիարքարանի վաղեմի յարաբերութեան բոլորովին հակառակ է եւ վնասակար.

20. Կան Թեմականք՝ որ խնդիրնին Պատրիարքարան գրելով բոլոր պարտքերնին կատարած կը համարեն, եւ 'ի տեղւոյն լուծելի անպատ. խնդիրներով Պատրիարքարանը կզբաղեցունեն.

21. Լաւ է՝ որ Թաղ. Խորհուրդներ աստիճան մը զգացման ներքեւ լինին՝ թէ աւագերէց քահանայն թեմակալ եպիսկոպոսին աչքն է, զի տակաւ առ տակաւ թաղականներն եկեղեցւոյ նիւթական մատակարարութեան սահմանէն ելած մինչեւ քահանայից հոգեւորական գործոց վրայ ազդեցութիւն բանեցնելու եւ հրաման ընելու ջանքեր կընեն. Ասկէց զատ աւագերէց քահանայից դիրքը բարձր բռնելու հետեւանքն այն կըլլայ՝ որ Թաղ. Խորհրդոց եւ քահանայից դասուն մէջ կարեւոր միջոց մը դրուելով՝ միշտ համամտութիւն եւ համագործ բարեկարգութիւն մը կը գոյանայ մէջերնին.

22. Շատ անգամ պատահած է՝ որ բարուք զեղծ, եւ երբեմն ալ օտար կրօնի բրօբականտայի գործաւորներ Թաղ. Խորհրդոց գեղջկութիւնը եւ միամտութիւնը պատրելով դպրոցներ մտած են եւ մեծ գայթակղութիւն յառաջ բերած. Երբեմն ալ իրենց գիւղի մանկըտւոյն անյարմար դասատու ծանր ծախքով վարձած եւ պարտուց ներքեւ ինկած, յորմէ խռովութիւն յառաջ եկած է.

23. Թեմակալ Եպիսկոպոսին ամսական վճարուիլն անպատեհ է, մէկ մը՝ որ Եպիսկոպոսն վարձկան ծառայի մը ձեւ կառնէ, մէկ մ'ալ որ Քաղաքական Ժողովոյ բարեհաճութեան ներքեւ կիյնայ եպիսկոպոսին արժանի անկախութիւնը, մէկ մ'ալ որ առաջնորդը իւր հասոյթին գանձման անհոգ կը կենայ. Քաղաքական Ժողովն ալ ազդեցութիւն չկրնար ունենալ գիւղերու վրայ ազգային տրոց գանձման մասին, որով արդեանց եւ ծախուց վիճակը առաջնորդարանը միշտ փորձութեան մէջ կը ձգէ.

24. Հին ժամանակներն այսպէս կընէին Պատրի-